դիտել կուտան թէ Մ. Նահանգներու բողոքը հետեւանք է հրէա - կան խաղերու: Երկու երկիրներուն յարաբերութիւնները միշտ լարուած կը մնան, քանի որ պայքարը կը շարունակուի փոխա - դարձաբար:

ՄԱՀՈՒԱՆ ՊԱՏԻԺ կը սպառնայ 17 ամբաստանեալներու, ո - րոնք ձերբակալուած են, ահաբեկում սարքած ըլլալով Հիթլերի, Կէօրինկի եւ Կէօպէլսի դէմ: Դատավարութիւնը պիտի սկսի յուն - ուարին: Ամբաստանեալներուն գլուխը կը գտնուի հրապարակա - գիր մը, Նիքիշ, որուն համար կ'ըսեն թէ դաւը սարքած էր քանի մը շաբթուան մէջ:

ՉԵԽԱԿԱՆ ՄԵԾ ԶԻՆԱԳՈՐԾԱՐԱՆԸ, Շքօտա, գերմանական հակողութեան տակ ինկած է, իբրեւ հետեւանք նոր կացութեան: Այս պարագան մեծ վրդովում պատճառեց Փարիզի մէջ:

# ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ «ՀԱՄԱԶԳԱՅԻՆ»Ի, ՖՐ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ, ՆՈՒԻՐՈՒԱԾ ՀԱՅ ԹԱՏՐՈՆԻՆ, ՄԱՐՏ 19 ՄԻՒԹԻՒԱԼԻԹԷԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

## Ն Ո Ւ Ա Գ Ա Հ Ա Ն Դ Է Ս Մ Ա Ր Ս Է Յ Լ Ի Մ Է Ջ

ՏԱՂԱՆԴԱՒՈՐ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ **ՖԻԼԻՓ ԵՂԻԱԶԱՐԵԱՆԻ**

Յունուար 15ին, **Colléée**ի սրահին մէջ

Նկատի ունենալ այս թուականը եւ չխաչաձեւել:

## Հ. Յ. Դ.

Փարիզ

ԱԼՖՈՐՎԻԼԻ «Ս. Մինասեան» ենթակոմիտէի ընդհ. ժողովը 3 Յունուար երեքշաբթի երեկոյ ժամը 8.30ին, «Հայ Ակումբ»ին մէջ:



## ԵՂԱՆԱԿԻ ՓԱՅԼՈՒՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

7 Յունուար Շաբաթ երեկոյ ժամը 8.30էն մինչեւ լոյս

ՍԱԼՈՆ ԳՕԼԻՋԷԻ ՄԷՋ

Գեղարուեստական բաժին: Պարահանդէսին պիտի նուագէ նը - քանաւոր **Jazz Paladium de Londres**.





## Նէրկայացում եւ պարահանդէս

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ԵՒ ՇՐՋ. ՀԱՅՐ. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

22 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30էն մինչեւ կէս գիշեր

8 Ռիւ Ժան Կուժօն, Մէթրօ Շանզ Էլիզէ - Քլէմանսօ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ **ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ**

Ղեկավարութեամբ դերասան Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ, կը մասնակցին՝ Տիկիններ ԳԱՑԵԱՆԷ, ՔՆԱՐ ԱԶՆԱՒՈՐԵԱՆ, ՔԱՋԱՅՐ եւ ՔԻՒԹՆԷՐԵԱՆ, Պ. Պ. ԱԶՆԱՒՈՐԵԱՆ, Ա. ՍԱՐԱՖԵԱՆ եւ Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ:

Երաժշտութիւնը կը վարէ Թառահար ԳԱՐԵԳԻՆ: Ժամը ճիշդ 7ին կը սկսին եւրոպական պարերը: Ընտիր նուագախումբ, ղեկավարութեամբ յայտնի դաշնակահար ՍԼԱՎՍՔԻԻ:

Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով:

Տոմսերը կը ծախուին, Գրատուն Հրանտ Սամուէլ, 51 Rue Mr. le Prince, Paris (6.), Թ. Նալպանտեան, 13 Rue Richér, Paris (9), Ս. Հալվաճեան, 4, Rue d'Alexandrie, Peris (2), հանդէսին օրը կիչէն:

Մուտք՝ 8, 10 եւ 15 ֆրանք:





## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ ԱՆԻԷՌ - ՊՈՒԱՔՈԼՈՆՊԻ ՀԱՅԵՐԷՆ ԴԱՍԸՆ - ԹԱՑՔՆԵՐՈՒ ԿՐԹԱԿԱՆ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

1 Յունուար, Կիրակի երեկոյ ժամը 8.30ին ընկերվարականներու սրահին մէջ, 149 bis, Avenue d'Argenteuil, Անիէռ:

Երգ, արտասանութիւն, պար եւ զանազան դպրոցական խաղեր:

Մուտք՝ 5 եւ 3 ֆրանք





## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

ՕՓԵՐԱՅԻ ԵՐԳՉՈՒՀԻ ՏԻԿԻՆ **ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆԻ**

ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

Տեղի պիտի ունենայ 1 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30ին **Salon MASSILIA**ի մէջ, **1 Rue Roux de Brignolle,** Մարսէյլ:



## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

**ՕՐ. ԱՆԺԷԼ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆԻ**

Ա. մրցանակ Մարսէյլի պետական երաժշտանոցէն

(Grand prix Wicart)

7 Յունուար, Շաբաթ ժամը 21ին, **Salle Emile Zola**

Մուտք՝ 4, 6 եւ 10 ֆրանք:









## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԵՑԷՔ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐԵՑԷՔ «ՅԱՌԱՋ»ԻՆ

## ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Սկսանք դրկել 1939 Յունուար 1էն

ՓԱՐԻԶ.— Լ. Փափ.

ՊՈՒԱ. ՔՈԼՈՆՊ.— Ա. Յով.

ԳՈՒՏԱՓԵՇՏ.— Ն. Փալ.

ՓՈՒԱԹԻԷ.— Շ. Մէք.

ԼԻՈՆ ՎԵԶ.— Հ. Գ.

ԻՒՆԻՈՆ ՍԻԹԻ.— Օր. Ա. Ս.

Ընկեր Թորգոմ Ղազարեան (Սէն Շամոն) կը յայտնէ ծնունդը իր անդրանիկ մանչուն՝ ՎԱՐՈՒԺԱՆԻ:

×

Ընկեր Արամ Տէմիրճեան (Սէն Շամոն) կը յայտնէ ծնունդը իր անդրանիկ աղջկան՝ ՋԱՐՈՒՀԻ ԱԼԻՍԻ:

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցիի հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ 1 Յունվ. (Նոր Տարի) եւ Ս. Ծննդեան 3րդ օրը 8 Յունուար եկեղեցւոյս մէջ Ս. Պատարագի արարողութիւնները կը կատարուին եռաձայն եւ դաշնամուրով, գլուխ Երիտ. Երկսեռ Միութեան երգչախումբին կողմէ՝ ղեկավարութեամբ Պ. Վահրամ Էլմաճեանի: Կը պատարագէ Տ. Աստէ քհնյ. Փայլակ:

Կը հրաւիրուին շրջանիս ազգայիններ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Բնիկ Էփէրէցի (Կեսարիա) Տիգրան Թունտոեան, որուն հասցէն էր5, Rue de Pourtour, Meudon (S et O): կը խնդրուի իմացնել «Յառաջ»ի վարչութեան կամ B. Stepanianի, 16 Bld. Michel, St. Juste, Marseille:

— Կը փնտռեմ եղբայրս՝ Անդրանիկ Տէօքմէճեան որ Կեսարիոյ որբանոցէն փոխադրուած էր Իզմիր: 1922ին Իզմիրի աղէտին փոխադրուած է Գալաթայի (Յունաստան) որբանոցը: Իր մասին լուր ունեցող ընկերներէն կը խնդրուի իմացնել իր քրոջ՝ Տիկին Հայկուհի Եայլաբեանի, 26 Rue Louis Blanc, Lyon, (Rhône), France:

## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՍԻՄՈՆ ԳԱԲԱՄԱՃԵԱՆ

ԳՐՊԱՆԻ ՏԱՐԵՑՈՅՑ

Ի. տարի

Գին **5** ֆրանք (Ֆրանսա), Արտասահման **1.50** շիլին կամ **40** սէնթ:

Դիմել հեղինակին.

44 Rue du Commerce, Colombes, (Seine) France:

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

ԱՎԻՆԵՈՆԷՆ Պ. Վարդերես Մինասեան իր եղբօր մահուան տարելիցին առթիւ կը նուիրէ 50 ֆրանք Ֆ. Կ. Խաչի Կեդր. Վարչութեան, 50 ֆր. Փարիզի Աղքատախնամին: Ստանալ «Յառաջ»ի Վարչութենէն:







Le Gerant : H. STEPHAN

17, Rue Damesme — PARIS (13) Imprimerie A-DER (AGOPIAN)

## ՆՈՒԷՐԱՏՈՒՆՔ

1 — 8 Յունուար 1939

ՊՈՐՏՕ, Գործ. — 360
ՊՈՐՏՕ, Շահ. — 100
ՓԼԷՍԻՍ, Ռոպէնսոն, Լ. Գ. — 40
ՏԷՍԻՆ, Յ. Պ. — 150
ՎՕ ԱՆ ՎԷԼԷՆ, Տ. Մ. — 75
ՆԻՍ, Ա. Գ. — 40
ԼԻՈՆ, Ա. Տ. — 50
ՊՐԻՒՍԷԼ, Զարմ. — 40
ՄԱՐՍԷՅԼ, Զր. — 55
ՓՈՆ ՏԸ ՇԵՐԻՒԻ, Պչ. — 50
ՎԻԼՖՐԱՆՇ, Մ. Պ. — 40
ՎԱԼԱՆՍ, Գործ. — 450
ՌԸՄՈՒԼԷՆ, Հ. Տ. — 150
ՓՈՒԱԹԻԷ, Շ. Մ. — 75
ՌՈՒԷՍԷ ՎԱՍԷ, Պել. — 150
ԿՐԱ, Զիւր. — 40
ԼԻՈՆ, Պետ. — 150
ՎԻԼԷՕՐՊԱՆ, Դ. Մ. — 70
ՍԷՆ ՄԱՐԹՈՐԻ, Գ. Ք. — 200
ՍԱՐՍԷԼ, Ղ. Ն. — 75
ՌՕՄԱՆ, Զահ. — 290
ՊՈՆՏԻ, Մ. Մեղ. — 75
ՆԻՍ, Օր. Մ. — 40
ՇԱՄՊԵՐԻ, Գ. Թ. — 75
ՊՈՒՐԺ, Գ. Ղար. — 75
ՇԱՎԱՆՈԶ, Մ. Տ. — 150
ԼՈՅ, Ա. Ա. — 215
ԼԻՈՆ, Տայ. — 75
ՓԻԷՌՖԷՕ, Վարդ. — 50
ՔՈԼՈՆՊ, Տիկին Ա. — 75
ՏԱՅՐԷՆ, Ա. Ա. — 215

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Տէր եւ Տիկին Ստեփան Ալեքսանեան եւ Ա. Մուրատեան (Փարիզ), իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն հայրենակից Տէր եւ Տիկին Միւշեղ Մուրատեանի եւ Այրի Տիկին Միրզէեանի (Վիէն) ԱԲՐԱՀԱՄ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ մահուան առթիւ։

✕

Տէր եւ Տիկին Թորգոմ Նալպանտեան եւ քոյրերը իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն Տէր Վահան քահանայ Խոյեանի եւ պարագաներու, Երիցուհի ՀԱՄԱՍՓԻՒՌ ԽՈՅԵԱՆԻ մահուան առթիւ։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Բնիկ Սիվրիհիսարցի Պ. Յակոբ Պալեօզեան, մայրը՝ Նուարդ, քոյրը՝ Վերոն, կը փնտռէ իր եղբօրորդին՝ Համբի Մկրտիչ Պալեօզեան, այժմ 35 տարեկան, որ մինչեւ 1926 Թուականը Քէֆալոնիա կը գտնուէր, ուրկէ՝ Թեսալոնիկ մեկնած ըլլալով, եւ մօրը՝ Համբի Կրօնիկին Պոլսէն Ֆրանսա մեկնելովը, ինքն ալ կը կարծուի իր մօրը մօտ գացած է։ Կը խնդրուի տեղեկացնել Յակոբ Պալեօզեանի, Փաթրաս (Յունաստան) Հայոց վարժարանը։

Le Gerant : H. STEPHAN
Imprimerie A-DER (AGOPIAN)
17. Rue Damesme — PARIS (13)



## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԵՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

**ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԻ ԵՒ ՇՐՋ. ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ Մ.ՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ**

ԵՒ Հովանաւորութեամբ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

22 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3.30էն մինչեւ կէս գիշեր **8 Ռիւ Ժան Կուժոն**, ՄԷԹՐՕ ՇԱՆԶ ԷԼԻԶԷ-ՔԼԷՄԱՆՍՕ

Կը ներկայացուի ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ

Ղեկավարութեամբ դերասան Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ (որ կը կատարէ Սուլթան բէկի դերը), կը մասնակցին Տիկիններ՝ ՔՆԱՐ ԱՃՆԱՒՈՐԵԱՆ, ՔԱՋԱՅՐ եւ ՔԻՒԹՆԷՐԵԱՆ, Պ. Պ. ԱՃՆԱՒՈՐԵԱՆ, Ա. ՍԱՐԱՖԵԱՆ եւ Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ։

Երաժշտութիւնը կը վարէ Թառիստ ԳԱՐԵԳԻՆ։ Ժամը ճիշդ 7ին կը սկսին հայկական եւ եւրոպական պարերը, մէջ ընդմէջ տեղի կ՚ունենան երգ, արտասանութիւն եւն.։ Ընտիր նուագախումբ, ղեկավարութեամբ յայտնի դաշնակահար ՍԼԱՎՄՔԻԻ։

Ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով։

Տոմսերը կը ծախուին, Գրատուն Հրանտ Սամուէլ, 51 Rue Mr. le Prince, Paris (6.), Թ. Նալպանտեան, 43 Rue Richer, Paris (9), Ս. Հալվաճեան, 4, Rue d'Alexandrie, Peris (2), անդէպին օրը կէշէն։
Մուտք՝ 8, 10 եւ 15 ֆր.։ Փոքրիկներու 3 ֆրանք։

### ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ
ՓԱՐԻԶԻ Հ. Յ. Դ. «ԵԳԻՊՏԱՑԻ» ԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ
22 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին
ՍՈՍԻԷԹԷ ՍԱՎԱՆԹի Ð, սրահին մէջ, 8 Ռիւ Տանթոն, մեթրօ Օտէօն
ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ Ա. ՃԱՄԱԼԵԱՆ
Նիւթ՝ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՒ ԿՈՎԿԱՍԵԱՆ ՀԱՐՑԵՐԸ։

### «ՐԱՖՖԻ» ԼՍԱՐԱՆ

Յառաջիկայ դասախօսութիւնը 24 Յունուար, Երեքշաբթի երեկոյ ժամը 9ին Cadet ուրճարանին վերնայարկը, Մէթրօ Cadet։
Կը խօսի՝ Պ. Ս. ՎՐԱՑԵԱՆ։ Նիւթ՝ Ի՞նչ է ազգը։

### ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿՈՒՄԲԸ

Կազմակերպած է «Սասունցի Դաւիթ»ի հազարամեակին առթիւ գրական երեկոյթ, 22 Յունուար, Կիրակի երեկոյեան ժամը 9ին, Inst. C. P.ի սրահին մէջ, (երկրորդ յարկ), 51 Rue des Ecoles, Մէթրօ Սէն Միշէլ կամ Քլիւնի։

Կը խօսի Փրոֆ. Ա. Դ. Ո Ն Ց
Խօսք կ՚առնեն Պ. Պ. Վ Ր Ա Ց Ե Ա Ն եւ Զ Օ Պ Ա Ն Ե Ա Ն
Տեղի պիտի ունենան արտասանութիւններ «Սասունցի Դաւիթ»էն։

### ԱՄՍՕՐԵԱՅ ՊԱՐԱՆՑԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ
ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ
ԵՒ ՀԱՅՈՒՀԵԱՑ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ
22 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 5էն կէս գիշեր իրենց կեդրոնը, 8 Ռիւ Պուսիւէ, Փարիզ։
Ընտիր օրքէսթր, ճոխ պիւֆէ. Մուտք՝ 3 եւ 5 ֆրանք։

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Լիլայի Մասնաճիւղին կողմէ
22 Յունուար, Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին
34 Avenue Porte des Lilasի սրահին մէջ (Մէթրօ Փօրթ տէ Լիլա)
Տօնածառ, երգեր, արտասանութիւններ, պար եւ ներկայացում աշակերտներու կողմէ։ Շարժանկար մանուկներու համար։ Ժամը 4ին նախընթրիք փոքրիկներու։
Մուտք՝ մեծերուն 3 ֆր., փոքրերուն համար ձրի։

### ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ԴԵՐԱՍԱՆ ՍՈՒՐԷՆԵԱՆԻ ԿՈՂՄԷ
ՍԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ ԳՄԲԷԹԵԱՆԻ ԵՒ ԾԱՆՕԹ ՈՒԺԵՐՈՒ
12 Փետրուար, Կիրակի ցերեկ ժամը ճիշդ 3ին
**Théâtre Renée Maubel**ի մէջ
Թիւ 4 à 10 Rue de L'Orient, Paris (18) Metro Blanche կամ Abbesses
ԿԸ ԲԵՄԱԴՐՈՒԻ Պ. ՊՌՕՇԵԱՆԻ ԱՕՍ ԵՒ ՎԱՐԴԻԹԵՐ
(երաժշտական տրամ 4 արար)
Ընտիր նուագախումբ ղեկավարութեամբ Պ. ՌԱՖԱՅԷԼԵԱՆԻ։
Այժմէն փութացէք ապահովել ձեր տոմսակները։ Մուտք՝ 8, 10, 15 եւ 20 ֆրանք։ Տոմսերը կը ծախուին՝ Նպարատուն ՀՐԱՉԵԱՆ, 6, Rue Lamartine, Paris, ԱՐԱՐԱՏ, ԿՈՆՍԹԱՆԹԻՆՕՊԼԸ, ՇԻՐԱԿ նպարատուները, Rue Trèvise։ Գրատուն ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ, եւ «ՅԱՌԱՋ»ի ու «ԱՊԱԳԱՅ»ի խմբագրատունները։

